Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 11 ՀՈՒՆԻՍ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։






# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ-Ն ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ


Հ. ՄԱԴՈՅԱՆ

Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու


*Այս տարվա օգոստոսի 1-ին Մոսկվայում բացվելու է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը, որտեղ ցուցադրվելու են մեր երկրի սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում ձեռք բերված վիթխարի նվաճումները։*

*Եղբայրական մյուս ռեսպուբլիկաների հետ միասին Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում ձեռք բերած իր նվաճումները ցուցադրելու է նաև Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան։*

*Մեր ռեսպուբլիկան իր նվաճումները ցուցադրելու է ինչպես ռեսպուբլիկական, այն-*







պես էլ բազմաթիվ մասնագիտացված պավիլիոններում։ Լայն ցուցադրման կարգով ներկայացվելու են մոտ 200 առաջավոր կոլտնտեսություններ, կոլտնտեսային անասնապահական ֆերմաներ, սովխոզներ, անտառտնտեսություններ, մեքենա-տրակտորային կայաններ, գիտա-հետազոտական և բարձրագույն ուսումնական հաստատություններ, ինչպես նաև առաջավոր աշխատողներ։ Ցուցահանդեսի թեկնածուների թիվը հասնում է ավելի քան 800-ի։

Մեր ռեսպուբլիկայից ցուցահանդեսի թեկնածու է առաջադրված Շահումյանի շրջանը, որը աչքի ընկնող հաջողությունների է հասել հանրային անասնաբուծության զարգացման գործում։

Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները յուրաքանչյուր ֆուրաժային կովից 1952 թվականին ստացել են 2.118 կգ., իսկ 1953 թվականին՝ 2.289 կգ. կաթ։ 1949 թվականի համեմատությամբ՝ 1953 թվականին Շահումյանի շրջանի կոլտնտեսություններում յուրաքանչյուր կովի կաթնատվությունը բարձրացել է մոտ 4 անգամ։ Զգալի հաջողություններ են ձեռք բերված նաև անասնաբուծության մյուս ճյուղերի՝ խոզաբուծության, ոչխարաբուծության և թռչնաբուծու-



թյան զարգացման գործում։ Այսպես, եթե 1949 թվականին յուրաքանչյուր մերունից ստացվել էր 6, ապա 1952 թվականին ստացվեց 17 խոճկոր։ Յուրաքանչյուր 100 մաքիից անցյալ տարի ստացվել է 102 գառ։

Անասնաբուծության և գյուղատնտեսության մյուս ճյուղերի զարգացման գործում ձեռք բերած նվաճումների համար շրջանի ավելի քան 150 առաջավորներ, կոլտնտեսություններ, անասնապահական ֆերմաներ առաջադրվել են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածուներ։ Դրանց թվում են Կալինինի անվան կոլտնտեսության վարչության նախագահ Բ. Մըկըրտչյանը, կաթնապրանքային ֆերմայի վարիչ Ա. Ավետիսյանը, կթվորուհի Հ. Հովհաննիսյանը, պարտիայի Շահումյանի շրջկոմի առաջին քարտուղար Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Դ. Հովհաննիսյանը, շրջսովետի գործկոմի նախագահ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Թ. Կիրակոսյանը, ՄՏ կայանի դիրեկտոր Ա. Խաչատրյանը և շատ ուրիշներ։

Հիշատակության արժանի է նույն շրջանի Կալինինի անվան կոլտնտեսությունը, որը ցուցահանդեսին ներկայացվում է անասնա-

բուծության զարգացման գործում ձեռք բերած փայլուն նվաճումներով։

Կալինինի անվան կոլտնտեսությունը յուրաքանչյուր ֆուրաժային կովից 1952 թվականին ստացել է 3.395 կգ., իսկ 1953 թվականին՝ 3.345 կգ. կաթ։ Կովերի կաթնատվությամբ այս կոլտնտեսությունը առաջին տեղն է գրավում ռեսպուբլիկայում։ Անցյալ տարի այստեղ վարելահողի, մարգագետնի և արոտավայրերի յուրաքանչյուր 100 հեկտար տարածությունից ստացվել է 445,9 ցենտներ կաթ։ 1949 թվականի համեմատությամբ 1953 թվականին յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը բարձրացել է ավելի քան 6,5 անգամ։

Ծխախոտագործության զարգացման գործում ձեռք բերած նվաճումների համար Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու է առաջադրված Ազիզբեկովի շրջանի Արենի գյուղի Կալինինի անվան կոլտնտեսությունը։

Այս կոլտնտեսությունը 1952 թվականին 40 հեկտար ծխախոտի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 22,5 ցենտներ բերք։

Ծխախոտագործության և գյուղատնտեսության մյուս ճյուղերի հաջող զարգացման



շնորհիվ կոլտնտեսությունը վաղուց արդեն միլիոնատեր է, աճել է կոլտնտեսականների նյութական բարեկեցությունը։ 1952 թվականին յուրաքանչյուր աշխօրին կոլտնտեսությունը բաշխել է 4 կգ. հացահատիկ, 12 ռ. դրամ, 1 կգ. խաղող և այլ մթերքներ։ 1953 թվականին յուրաքանչյուր աշխօրի դիմաց կոլտնտեսականները ստացել են 4,1 կգ. հացահատիկ, 10 ռ. դրամ, 1 կգ. խաղող, ինչպես նաև բանջարեղեն, կաթնամթերք և այլն։

Կոլտնտեսական Ս. Գասպարյանն իր վաստակած աշխօրերի դիմաց կոլտնտեսությունից ստացել է 5,5 տոննա հացահատիկ, 6,7 ցենտներ խաղող, 5 ցենտներ բանջարեղեն, 13 հազար ռուբլի դրամ և մեծ քանակությամբ այլ մթերքներ։

Արենի գյուղի Կալինինի անվան կոլտնտեսությունն այդ հաջողություններին հասել է աշխատանքի ճիշտ կազմակերպման, արտադրության մեջ աշխատանքի առաջավոր մեթոդներ կիրառելու և սոցիալիստական մրցություն ծավալելու շնորհիվ։

Այստեղ համարձակ կերպով արմատավորվում է երկրի առաջավոր ծխախոտագործների աշխատանքի հարուստ փորձը։ Կոլտնտեսության 11 ծխախոտագործներ ծխախոտի բարձր բերք ստանալու համար արժա-

նացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման, իսկ 47-ը պարգևատրվել են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով։ Ծխախոտի բարձր բերք աճեցնելու համար Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ Ա. Բաղդասարյանը, Ա. Դավթյանը, Փ. Մանուկյանը, Հ. Գրիգորյանը, Ա. Սիմոնյանը և շատ ուրիշներ այժմ առաջադրվել են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածուներ։

Այգեգործության և շերամապահության զարգացման գործում ձեռք բերված բարձր ցուցանիշների համար Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու է առաջադրված Մեղրու շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունը։

Ստալինի անվան կոլտնտեսությունը 1953 թվականին պտղատու այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացել է 102,8 ցենտներ բերք, իսկ խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից՝ 144 ցենտներ։ Զգալի չափով բարձրացել է բոժոժի բերքատվությունը։ 1952 թվականին յուրաքանչյուր տուփից աճեցրել են 76—92 կգ. բոժոժ, իսկ 1953 թվականին՝ 70—85 կգ.։

Բերքատվության բարձրացման շնորհիվ տարեցտարի կոլտնտեսությունը ավելի շատ



բերք է բաշխում կոլտնտեսականների վաստակած աշխօրերի դիմաց։ Այսպես, 1952 թվականին յուրաքանչյուր աշխօրին բաշխվել է 17 ռ. 22 կոպեկ, մոտ 1 կգ. խաղող, 0,5 կգ. բանջարեղեն և այլ մթերքներ։ 1953 թվականին յուրաքանչյուր աշխօրին բաշխվել է 25 ռ. 36 կոպեկ, 1,8 կգ. խաղող, 1,5 կգ. բանջարեղեն, 0,7 կգ. հացահատիկ և այլ մթերքներ։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում կցուցադրվեն Լոռվա տոհմային անասնաբուծական սովխոզի, Հոկտեմբերյանի հենակետային ցուցադրական ՄՏ կայանի, Արտաշատի շրջանի Փարիզյան կոմունայի անվան, Սևանի շրջանի Վարսեր գյուղի, Թալինի շրջանի Սպանդարյանի անվան կոլտնտեսությունների, Լենինականի պետական սելեկցիոն կայանի, Երևանի Անասնաբուժական ինստիտուտի, անտառտնտեսության և ուրիշ շատ կոլտնտեսությունների ու կազմակերպությունների նվաճումները։ Ցուցահանդեսում կցուցադրվեն նաև ռեսպուբլիկայի պատանի բնասերների խմբակների աշխատանքների արդյունքները։

***

Ռեսպուբլիկայի պավիլյոնում և մասնագիտացված մյուս պավիլյոններում ցուցա-

դրելու համար արդեն Մոսկվա են ուղարկված հայաստանյան կուլտուրաների, բանջարեղենի, զանազան մրգերի և գյուղատնտեսական շատ այլ մթերքների էքսպոնատներ։

Մոտ օրերս Մոսկվա կուղարկվեն նաև կաթնամթերքների, զանազան տեսակի խրմիչքների և կենդանիների լավագույն էքսպոնատներ։

Այժմ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում, սովխոզներում, ՄՏ կայաններում, գիտա-հետազոտական և ուսումնական հիմնարկներում սոցիալիստական մրցություն է ծավալվում՝ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունք նվաճելու համար։

---

## ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՐԵԱՅԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ ՆՈՐ ԿՅԱՆՔ ԵՆ ԿԱՌՈՒՑՈՒՄ

ՅԱ. ԿԱԴՈՒԼԻՆ

Այս օրերին, երբ Ժնևում արտաքին գործերի մինիստրների խորհրդակցությունում քննարկվում է Կորեական հարցը, նորից ամբողջ մարդկության ուշադրությունը բևեռված է իր նոր կյանքը կառուցող հերոսական կորեական ժողովրդի վրա։

Երկարամյա յապոնական գաղութային ճնշումից Սովետական Բանակի կողմից ազատագրված Հյուսիսային Կորեայի աշխատավորները ստեղծեցին նոր՝ ժողովրդադեմոկրատական կարգեր, որոնք անսահմանափակ հնարավորություններ տվեցին էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, ժողովրդի նյութական բարեկեցության աճման համար։

Կարճ ժամանակամիջոցում Հյուսիսային Կորեայում իրականացվեցին արմատական դեմոկրատական վերափոխություններ՝ տնտեսական, քաղաքական և կուլտուրական

կյանքի ասպարեզում։ Անցկացվեց հողային ռեֆորմ, որի շնորհիվ 727.522 հողազուրկ և սակավահող գյուղացիական տնտեսություններ անվճար ստացան մեկ միլիոն հեկտարից ավելի հող, որը բռնագրավված էր յապոնական կալվածատերերից, յապոնասիրական տարրերից և ազգային դավաճաններից։ Արդեն 1950 թվականին արդյունաբերական արտադրության մակարդակը, 1944 թվականի համեմատությամբ, բարձրացավ 51,4 տոկոսով, բրնձի համախառն բերքը 1949 թվականին, 1944 թվականի համեմատությամբ, կազմեց 148 տոկոս։ Երկրում խիստ վերացված է գործազրկությունը, լուծված է պարենային պրոբլեմը։

Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ամրությունը հատուկ ուժով դրսևորվեց ամերիկյան ինտերվենտների և նրանց լիսինմանական վարձկանների միացյալ ուժերի դեմ մղած եռամյա հերոսական պայքարում։ Պատերազմի ամենածանր տարիներին, չնայած գազանային ավերիչ ռմբակոծություններին, ԿԺԴՌ արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը հաջողությամբ էին լուծում իրենց խնդիրները, ապահովելով ռազմաճակատի և թիկունքի կարիքների բավարարումը։



Այժմ Հյուսիսային Կորեայի աշխատավորները ժողովրդական կառավարության և Աշխատանքային պարտիայի ղեկավարությամբ, չտեսնված խանդավառությամբ վերականգնում են ժողովրդական տնտեսությունը։ Կորեայում զինադադար հաստատելուց հետո անցել է ընդամենը 9 ամիս, բայց այդ ժամանակում արդեն շատ բան է արված պատերազմի հետևանքները վերացնելու համար։

Ժողովրդական կառավարությունը և Աշխատանքային պարտիան առաջին հերթին հոգ տարան վերականգնելու շինանյութերի գործարանները և կառուցելու նորերը, ինչպես նաև կազմակերպելու շինափայտի հայթայթումը՝ ամբողջ երկրում շինարարական աշխատանքները լայն ճակատով ծավալելու համար։ Եվ այդ առաջնահերթ խնդիրը լուծվեց հաջողությամբ։ Սինխոըիյսկի ցեմենտի վերականգնված գործարանը ամեն օր տալիս է 200 տոննա բարձրորակ ցեմենտ, իսկ բոլոր ցեխերը շահագործման հանձնելուց հետո, տարեկան կարտադրվի 400 հազար տոննա ցեմենտ և 4 միլիոն քառակուսի մետր շիֆեր։ Տեսենի աղյուսի գործարանը օրական արտադրում է 300 հազար աղյուս։ Անընդհատ հոսանքով փայտ է գալիս պեկ-

տուսանյան անտառարդյունտեսություններից, որոնք կազմակերպվել են պատերազմից հետո։

ԿԺԴՌ կառավարությունը մշակել է ժողովրդական տնտեսության վերականգնման և հետագա զարգացման եռամյա պլան։ Արդեն այս տարի արդյունաբերության համախառն արտադրանքի աճը անցյալ տարվա համեմատությամբ կկազմի 160,8 տոկոս, իսկ հացահատիկի համախառն բերքը՝ 120 տոկոս։

Ինչպես հայտնի է, Հյուսիսային Կորեայի ժողովրդական տնտեսության վերականգնման համար Սովետական Միությունը անվերադարձ հատկացրեց մեկ՝ միլիարդ ռուբլի։ Այդ միջոցները կորեական ժողովուրդը օգտագործում է խոշոր գործարանների, ֆաբրիկաների, էլեկտրակայանների վերականգնման և կառուցման համար, որոնք կազմում են ժողովրդական տնտեսության հիմքը։ ՍՍՌՄ-ը Կորեային մատակարարում է գործարանային ժամանակակից սարքավորում, զանազան մեքենաներ, տրակտորներ և գյուղատնտեսական գործիքներ, շինանյութեր, բանող և ցեղական անասուններ, տրանսպորտի միջոցներ, էլեկտրասարքավորում, ձկնորսական նավեր, պարարտանյու-



թեր, օգնում է ազգային ինժեներա-տեխնիկական կադրեր պատրաստելու գործին, ուղարկում է իր մասնագետները, տեխնիկական կոնսուլտացիա է կազմակերպում։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան միայն 1954 թվականին Կորեային անհատույց կտրամադրի 100 հազար տոննա հացահատիկ, 30 հազար տոննա սոյա, մի քանի տասնյակ միլիոն մետր գործվածքեղեն, մեծ քանակությամբ ածուխ։

Չեխոսլովակիան Հյուսիսային Կորեայում անվճար կառուցում է ավտոմոբիլային, գործիքային և այլ գործարաններ, ինչպես նաև վերականգնում է ցեմենտի գործարանը և երեք հիդրոէլեկտրակայան։ Լեհաստանը 1954—56 թ. թ. ընթացքում կկառուցի շոգեքարշա-վերանորոգման և վագոնավերանորոգման գործարաններ, կվերականգնի և կսարքավորի քարածխի երեք հանքահորեր։ Հունգարիան կառուցում է ներկերի քիմիական կոմբինատ, չափող գործիքների գործարան, դազգահաշինական գործարան, օգնում է էլեկտրասարքավորումով, կապի միջոցներով և այլ նյութերով։ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան երեք տարվա ընթացքում ԿԺԴՌ-ում կկառուցի դիզելային մոտորների գործարան, էլեկտրական գոր-

*ծիքների արտադրության գործարան, տպարան։ Հյուսիսային Կորեայի վերականգնման գործին մեծ ավանդ են մուծում նաև Ռումինիան, Բուլղարիան, Ալբանիան և Մոնղոլիան։*

*Հյուսիսային Կորեայի աշխատավորներին Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների կողմից ցույց տրվող անշահախնդիր մեծ օգնությունը դեմոկրատական լագերի եղբայրական ժողովուրդների անխորտակելի բարեկամության վառ վկայություն է հանդիսանում։*

*Հաջողությամբ վերականգնվում է գյուղատնտեսությունը, ընդարձակվում են բրինձի, տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունները, զարգանում է շերամապահությունը։ Պատերազմից հետո զգալիորեն աճեց մեքենավարձույթային կայանների ցանցը։ Լեռնային շրջաններում, որտեղ հնարավոր չէ տրակտոր գործադրել, կազմակերպված են ձիավարձույթային կայաններ։ Ռեսպուբլիկայում ստեղծված են մի շարք պետական հողագործական տնտեսություններ և անասնաբուծական ֆերմաներ։ Ժողովրդական կառավարությունը բազմակողմանի օգնություն է ցույց տալիս գյուղատնտե-*



*սական կոոպերատիվներին և քաջալերում է նրանց հետագա աճը։*

*Ժողովրդական կառավարությունը հոգատարություն է ցուցաբերում գյուղացիության նկատմամբ։ Գյուղացիները ազատված են բնահարկի և պետության կողմից նրանց տրված սերմվարկի ու պարենվարկի գծով ունեցած պարտքերի վճարումից։ Վերացված է մսի պարտադիր հանձնումների սիստեմը, գյուղացիությանը դրամական մեծ վարկ է տրվում տնտեսությունը վերականգնելու, բնակելի տներ կառուցելու, անասուններ ու գյուղատնտեսական ինվենտար ձեռք բերելու համար և այլն։*

*Արդյունաբերության և գյուղատնտեսության հաջող վերականգնումը արդեն այժմ իր դրական ազդեցությունն է ունենում Հյուսիսային Կորեայի աշխատավորության նյութական բարեկեցության բարելավման վրա։ Զգալի չափով իջեցված են արդյունաբերական և պարենային ապրանքների գները։ Վերջերս 30—50 տոկոսով նորից իջեցվել են բամբակե գործվածքեղենի, կոշկեղենի, սննդամթերքների, կուլտ-ապրանքների և այլ առարկաների պետական մանրածախ գները։*

*Ամբողջ կորեական ժողովուրդը ձգտում է*

կայուն խաղաղություն հաստատել երկրում, խաղաղ կերպով միավորել իր հայրենիքը դեմոկրատական հիման վրա։

Ժնևում տեղի ունեցող արտաքին գործերի մինիստրների խորհրդակցության ԿԺԴՌ դելեգացիայի ղեկավար Նամ Իրը կոնստրուկտիվ առաջարկներ մտցրեց կորեական հարցի կարգավորման համար։ Նախ և առաջ երկու կողմերն էլ պետք է միջոցներ ձեռնարկեն կանխելու Կորեայում պատերազմի վերսկսումը, խաղաղ կերպով վերջնականապես կարգավորեն Կորեական հարցը։ Դեմոկրատական հիմունքներով Կորեայի խաղաղ միավորման կարևորագույն պայմանն այն է, որ վեցամսյա ժամկետում Կորեայից դուրս բերվեն բոլոր օտարերկրյա զորքերը։ Կորեան խաղաղ ճանապարհով միավորելու գործը պետք է հանձնվի հենց իրենց՝ կորեացիներին, առանց դրսից կատարվող որևէ միջամտության։ Հյուսիսային և Հարավային Կորեայի միջև պետք է համաձայնություն ձեռք բերվի ամբողջ կորեական ժողովրդի անկաշկանդ մասնակցությամբ համակորեական ընտրություններ անցկացնելու մասին։ Կորեայի միավորումը խաղաղ ճանապարհով պետք է ավարտվի ամբողջ կորեական ժողովուրդը ներկայացնող համա-



կորեական միասնական դեմոկրատական կառավարության ստեղծմամբ։

Սակայն Լի Սին Մանի կլիկը և նրա ամերիկյան հովանավորողները վախենում են դեմոկրատական ընտրություններից, այն բանից, որ կորեական ժողովուրդը ազատորեն արտահայտի իր կամքը։ Նրանք լավ են հասկանում, որ կորեական ժողովուրդը դեմ է ամերիկյան գաղութային քաղաքականությանը, կանգնած է և կանգնած կլինի ազատ, անկախ, դեմոկրատական պետություն ստեղծելու դիրքերում։ Դրա համար էլ Լի Սին Մանը Ժնևի խորհրդակցության հենց նախօրյակին հանդես եկավ դեպի հյուսիս, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դեմ նոր արշավանք կազմակերպելու պրովոկացիոն ըսպառնալիքներով։

Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան, որին պաշտպանում է ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը, վստահորեն ընթանում է նոր կյանքի կառուցման ուղիով, իր հաջողություններով կայուն հիմք ստեղծում դեմոկրատական հիմունքներով երկրի խաղաղ միավորման համար։

# ԶՐՈՒՅՑ ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԵՐԵԿՈՅԱՆ ՀԱՆՐԱԿՐԹԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ԱՐ. ՍԱՐԳՍՅԱՆ

Հայկական ՍՍՌ Լուսավորության մինիստրության դպրոցական տեսուչ, վաստակավոր ուսուցիչ

Սովետական Հայաստանում աճող ու զարգացող ժողովրդական կրթության սիստեմում պատշաճ տեղ են գրավում երեկոյան հանրակրթական դպրոցները։

Այդ դպրոցների նպատակն է արտադրության մեջ և գյուղատնտեսական աշխատանքում զբաղված երիտասարդությանն առանց աշխատանքից կտրելու յոթնամյա և միջնակարգ կրթություն տալ և նրանց հնարավորություն ընձեռել սովորելու միջնակարգ մասնագիտական ու բարձրագույն ուսումնական հաստատություններում։

Այժմ մեր ռեսպուբլիկայում կան բանվոր երիտասարդության երեք տիպի դպրոցներ՝ տարրական՝ 1—4 դասարաններով, յոթնամյա՝ 1—7 դասարաններով և միջնակարգ՝ 1—



10 դասարաններով և երկու տիպի գյուղերիտ դպրոցներ, տարրական՝ 1—4 դասարաններով ու յոթնամյա՝ 1—7 դասարաններով։ Բաներիտ և գյուղերիտ դպրոցների յուրաքանչյուր դասարանում սովորողների առավելագույն թիվը սահմանված է 20 հոգի։ Ուսման տարին բաներիտ դպրոցներում ըսկըսվում է մասսայական հանրակրթական դպրոցների հետ միասին՝ սեպտեմբերի 1-ից և ավարտվում է հունիսի 27-ին, ներառյալ ավարտական և փոխադրական քննությունների համար սահմանված ժամանակաշրջանը, իսկ գյուղերիտ դպրոցներում ուսումնական տարին սկսվում է նոյեմբերի 1-ից և ավարտվում մայիսի 1-ին։ Երիտասարդ բանվորների և կոլտնտեսականների հաջող ուսուցման համար ստեղծված են նպաստավոր պայմաններ, ինչպես նաև նրանց տրված են մի շարք արտոնություններ։ Բաներիտ դպրոցներում սովորողները Միութենական կառավարության որոշմամբ կատարում են այնպիսի աշխատանք, որը չի խանգարում նրանց դպրոց հաճախելուն։ Բացի այդ, նրանք ազատված են ուսման վարձից և միաժամանակ տարեվերջի քննությունների շրջանում ստանում են լրացուցիչ արձակուրդ։ Արձակուրդի ընթացքում լրիվ չա-

փով պահպանվում է նրանց աշխատավարձը։ 10-րդ դասարաններում սովորողներին տրվում է 20 օր լրացուցիչ արձակուրդ, իսկ 7-րդ դասարանում սովորողներին՝ 15 օր։ Այդ նույն որոշմամբ ձեռնարկությունների ղեկավարներին պարտավորեցված է մնացած դասարաններում սովորողներին՝ քննությունների շրջանում ազատել աշխատանքից և ազատված օրերը հաշվի առնել հերթական արձակուրդ տալու ժամանակ։

Հասունության ատեստատի քննությունները հանձնելիս բանվորի դպրոցի աչքի ընկնող առաջադիմություն ցույց տվող աշակերտները պարգևատրվում են ոսկե և արծաթե մեդալներով։

Իրենց կազմակերպման օրից բանվորի դպրոցները հսկայական աշխատանք են կատարել մեր ռեսպուբլիկայի երիտասարդ բանվորներին ու բանվորուհիներին միջնակարգ կրթություն տալու գործում։ Երիտասարդ բազմաթիվ բանվորներ անցած 10 տարիների ընթացքում սովորելով բանվորի դպրոցում և ավարտելով այն, հաջողությամբ ընդունվել են ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորելու։ Նրանցից շատերն ավարտել են Երևանի Պետական համալսարանը և ինստի-



տուտները ու այժմ ստեղծագործական աշխատանք են կատարում մեր երկրի ժողովրդական տնտեսության, կուլտուրայի և առողջապահության տարբեր բնագավառներում։

Միայն անցյալ ուսումնական տարում ռեսպուբլիկայի 37 բանվորի դպրոցներում, առանց արտադրությունից կտրվելու սովորել են 5.529 բանվորներ, որոնցից ավելի քան 5.000 հոգի փոխադրվեցին հաջորդ դասարան։ Ավելի քան 1000 բանվորներ և բանվորուհիներ ավարտեցին բանվորի դպրոցներն ու ստացան հասունության վկայական։ Երևան քաղաքի բանվորի դպրոցներում հասունության վկայական ստացան ավելի քան 500 երիտասարդներ։ Միայն Լենինական քաղաքի Մանածագործարանին կից բանվորի դպրոցն անցյալ ուսումնական տարում ավարտեցին 80 բանվորներ ու բանվորուհիներ։

Տարեցտարի ծավալվում է բանվոր երիտասարդության դպրոցների ցանցը, ավելանում է սովորողների թիվը։ Այժմ ավելի քան 10 հազար բանվոր-բանվորուհիներ հաջողությամբ իրենց արտադրական աշխատանքը համատեղում են սովորելու հետ։ Միայն այս ուսումնական տարում բանվորի դպրոցնե-

րում սովորողների թիվը ավելացավ 4.500-ով: Բացի Երևանում գործող 18 դպրոցներից, բաներիտ դպրոցներ են գործում նաև Լենինական, Կիրովական, Ալավերդի, Ղափան, Էջմիածին, Ն. Բայազետ քաղաքներում, Շահումյան, Թումանյան, Արարատ, Լուսավան, Գյումուշգէս և շատ այլ բանվորական ավաններում ու շրջանային կենտրոններում: Սովետական կառավարությունն ամեն տարի ավելացնում է երիտասարդության առանց արտադրությունից կտրվելու հանրակրթական գիտելիքներ տալու նպատակին հատկացվող միջոցներ:

Բանվոր երիտասարդության դպրոցների պահպանման վրա մինչև հիմա ծախսված է ավելի քան 27 միլիոն 205 հազար ռուբլի, իսկ ընթացիկ ուսումնական տարում այդ դպրոցների պահպանման վրա կծախսվի մոտ 5 միլիոն 713 հազար ռուբլի:

Եթե 1944—45 ուսումնական տարում ռեսպուբլիկայում գործում էին երեկոյան 7 դպրոց, իսկ 1950-51 ուս. տարում՝ 30, ապա ներկայումս միայն բաներիտ դպրոցների թիվը ռեսպուբլիկայում հասել է 50-ի: Այս ուսումնական տարվանից Երևանի, Լենինականի, Կիրովականի և Ալավերդու մի շարք բաներիտ դպրոցներ սկսեցին երկհերթ պա-



րապմունքը, որով հերթափոխ բանվորները հնարավորություն ստացան անխափան կերպով դպրոց հաճախել՝ ինչպես ցերեկը, այնպես և երեկոյան:

Կառավարության որոշմամբ Լուսավորության մինիստրությունը արտադրական ձեռնարկությունների ղեկավարների հետ միասին ձեռնամուխ է եղել նաև բաներիտ դպրոցների համար նոր շենքեր կառուցելու գործին: Երևանի № 5 բաներիտ դպրոցն այս ուսումնական տարվա սկզբին ստացավ նորակառույց հոյակապ տուֆաշեն շենք: Առանձին շենքեր են հատկացված նաև Երևանի ժամացույցի գործարանին, Կիրովականի Քիմիական կոմբինատին և Ալավերդու պղնձահանքերին կից բաներիտ դպրոցներին:

***

Կոլտնտեսային երիտասարդությանն առանց գյուղատնտեսական աշխատանքից կտրվելու յոթնամյա կրթություն տալու նպատակով 1944 թվականից մեր ռեսպուբլիկայում գործում են գյուղական երիտասարդության դպրոցներ:

Եթե 1944—45 ուսումնական տարում այդ դպրոցների վրա ծախսվել է 252 հազար ռուբլի, ապա ընթացիկ ուսումնական տա-

րում կծախսվի ավելի քան 2 միլիոն 530 հազար ռուբլի։

Ավելի քան 9.000 երիտասարդներ գյուղատնտեսական աշխատանքին զուգընթաց սովորել, ավարտել են գյուղական երիտասարդության դպրոցները։ Նրանց մի մասը սովորում է միջնակարգ ու բարձրագույն դպրոցներում, իսկ մյուս մասը, զինված հանրակրթական գիտելիքներով, ծրաջան պայքար է տանում հայրենի հողերի բերքատվության բարձրացման համար։ Միայն 1952—53 ուսումնական տարում մեր ռեսպուբլիկայում գործող գյուղերիտ դպրոցներում սովորող երիտասարդ կոլտնտեսականներից և կոլտնտեսուհիներից 1.395 հոգի ստացան 7-ամյա լրիվ կրթություն։

Ընթացիկ ուսումնական տարում ռեսպուբլիկայի 100 գյուղերիտ դպրոցներում սովորում են ավելի քան 6.500 երիտասարդ կոլտնտեսականներ։

Բանվորական և գյուղական երիտասարդության դպրոցները օգնում են սովետական երիտասարդությանը՝ բազմակողմանիորեն զարգացնելու իրենց մտավոր ընդունակությունները, որպեսզի կարողանան ազատորեն ընտրել և կատարելագործել ցանկացած մասնագիտությունը, ավելի լավ և արդյունավետ ծառայել սիրասուն Հայրենիքին։

---



# ՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԱՐՊԵՏՆԵՐԸ

Մ. ՂԱԶԱՐՅԱՆ

Արտաշատի շրջանի Մխչյանի ՄՏ կայանի կոլեկտիվը կազմակերպված սկսեց գարնան-դաշտային աշխատանքները։ Տրակտորային բրիգադները ժամկետից շուտ ավարտեցին հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաների ցանքը և այժմ հաջողությամբ կատարում են բամբակի, այգիների ու բանջարաբոստանային կուլտուրաների մշակության աշխատանքները։

ՄՏ կայանում իր լավ աշխատանքով հատկապես աչքի ընկավ տրակտորային № 6 բրիգադան, որն անցյալ տարվա տրակտորային աշխատանքների պլանը կատարել է ավելի քան 130 տոկոսով, իսկ այս տարվա գարնան գյուղատնտեսական աշխատանքները կատարեց գերազանց։

Բրիգադայի առանձին տրակտորիստներ, ինչպես, օրինակ, Ստեփան և Հայկազ Կարապետյանները, Հ. Դավթյանը և շատերը

հերթափոխային արտադրական նորման կատարում են 150—160 տոկոսով և նույնիսկ կրկնակի։ Դեռ չի եղել մի դեպք, որ բրիգադայի որևէ տրակտոր խափանումներով աշխատի կամ անորակ վար ու ցանք կատարի։

Ո՞րն է բրիգադայի հաջողության «գաղտնիքը», մեքենաների բարձր արտադրողականությունն ապահովելու համար աշխատանքի ի՞նչպիսի մեթոդներ ու եղանակներ են կիրառում ՄՏ կայանի այդ առաջավոր մեխանիզատորները։

— Տրակտորային բրիգադայի հաջողությունը ամենից առաջ բացատրվում է նրանով,—ասում է ՄՏ կայանի գլխավոր ինժեներ Վ. Ալեքսանյանը, որ բրիգադան գարնան դաշտային աշխատանքներն սկսեց լրիվ նախապատրաստած։ Ձմռան ամիսներին բարձր որակով նորոգված էին բրիգադայի տրակտորները։ Գարնանացանի հենց առաջին օրվանից դաշտ դուրս բերվեցին բոլոր մեքենաները, որոնք վարն ու ցանքը սկսելուց մինչև այժմ աշխատում են անխափան, բարձր արտադրողականությամբ։ Այսպիսով, տրակտորների աշնան ձմեռային բարձրորակ նորոգումը բրիգադայի հաջող աշխատանքի գլխավոր նախապայմաններից մեկն է։ Գյուղատնտեսական մեքենաների



հետագա անխափան և բարձր արտադրողական աշխատանքն ապահովելու գործում վճռական նշանակություն ունի նրանց տեխնիկական խնամքի ճիշտ կազմակերպումը։

Այստեղ առավելագույն ուշադրություն է դարձվում այդ գործի վրա։ Տրակտորիստներն իրենց մեքենաների մասին հոգ են տանում ամեն օր, ամեն ժամ։ Տեխնիկական խնամքը կատարվում է մեխանիկի և բրիգադիրի հսկողության տակ, սահմանված կանոններին խստորեն համապատասխան, ըստ սահմանված գրաֆիկի։ Այսպես, օրինակ, ԴՏ—54 տրակտորի առաջին տեխնիկական խնամքը բրիգադայում կատարվում է 35—40 հեկտար վարելուց հետո (փափուկ վարի վերածած)։ Այդ ժամանակ տրակտորիստը փոխում է յուղը, մաքրում քամիչները, ստուգում է պտուտակների ձգվածությունը, անհրաժեշտության դեպքում նաև թրթուրների ձգվածությունը և այլն։ Երկրորդ տեխնիկական խնամքը կատարվում է արդեն 70—80 հեկտար վար կատարելուց հետո։ Այս անգամ արդեն մաքրվում է շարժիչների յուղման ամբողջ սիստեմը, կարգավորվում է դիզելային վառելանյութի շրջանառությունը (ցիրկուլացիա)։ Երրորդ և չորրորդ տեխնիկական խնամքը կատարվում է

գլխավոր ինժեների և հսկիչ մեխանիկի հսկողության տակ, նրանց ցուցումներով։

Պարապուրդները կանխելու, մեքենաների արտադրական կարողությունը լրիվ օգտագործելու համար կարևոր նշանակություն ունի նաև հերթափոխի ճիշտ կազմակերպումը։ Տրակտորիստը մեքենան իր ընկերոջը պետք է հանձնի միանգամայն սարքին վիճակում, անկանոնությունները վերացնելուց հետո։ Իսկ մեքենան այդպիսի վիճակում հանձնելու համար, նա իր հերթափոխի ընթացքում կատարում է տեխնիկական խնամք, ուշի-ուշով հետևում նրա աշխատանքին։

Կարևորն այն է, որ մեքենայի անկանոն աշխատանքը նկատվի ժամանակին և միջոցներ ձեռք առնվեն թերությունը վերացնելու համար։—Տրակտորիստ Ս. Կարապետյանը,—ասում է բրիգադիրը,—ուշի-ուշով հետևում է տրակտորի կատարած յուրաքանչյուր աշխատանքին։ Նա այնքան է վարժվել այդ գործին, որ նույնիսկ գիտե, թե տրակտորի որ մասը փչանալիս մեքենայի ձայնը ինչպես է փոխվում։ Եվ այդպիսի անկանոնություն նկատվելուն պես մեքենան կանգնեցվում է, թերությունը վերացվում։ Հերթափոխության ընթացքում լրջորեն հոգ է տարվում մեքենայի խնամքի մասին և տրակտորը հեր-



թափոխող տրակտորիստին է հանձնվում միանգամայն սարքին վիճակում։ Այդ սկզբունքի հետևողական կիրառումը բարձրացնում է տրակտորիստի պատասխանատվությունը իր մեքենայի վիճակի նկատմամբ, ապահովում պետական առաջադրանքների, արտադրական նորմաների հաջող կատարումը։

Շատ տրակտորիստներ հաճախ բավականին ժամանակ են կորցնում մեքենայի մեջ վառելանյութ լցնելու համար։ Հաճախ տրակտորը դուրս է բերվում ակոսից և երկար ճանապարհորդություն է կատարում, մինչև որ ստանում է վառելանյութ և ապա վերադառնում։

Նշված տրակտորային բրիգադայում մեքենայի մեջ վառելանյութ լցնելու գործն այդպես չի կազմակերպված։ Այստեղ նվազագույնի է հասցված այն ժամանակը, որը հատկացվում է այդ նպատակի համար։ Տրակտորների մեջ վառելանյութ են լցնում հենց ակոսում։ Վառելանյութ մատակարարելու նման պրակտիկայի համար ստեղծված են անհրաժեշտ պայմաններ։

Տրակտորային բրիգադայի հաջողությունը շատ բանով կախված է նաև բրիգադիրի, նրա օգնականի լավ աշխատանքից։

*— Ես և իմ օգնականը,—ասում է բրիգադիր Ա. Հարությունյանը,— հատուկ ուշադրություն ենք դարձնում հերթափոխի կազմակերպման վրա, միջոցներ ենք ձեռք առնում, որ պարապուրդներ չլինեն, որ մեքենան մեկ տրակտորիստից մյուսին հանձնվի հենց աշխատելիս, որպեսզի տրակտորային աշխատանքի ոչ մի պարապուրդ չլինի։ ՄՏ կայանի ագրոնոմից տվյալ դաշտում վար ու ցանքի առաջադրանք ստանալով,— շարունակում է բրիգադիրը,— ես և իմ օգնականը անմիջապես ձեռնամուխ ենք լինում դաշտում աշխատանքի կազմակերպմանը, ագրոնոմի հետ հատուկ ուշադրություն դարձնելով կատարվող աշխատանքի որակի վրա։ Հոգ ենք տանում բոլոր տրակտորները ժամանակին վառելանյութով և պահեստամասերով ապահովելու մասին, խափանումների մասին ժամանակին իրազեկ ենք դարձնում ՄՏ կայանի դիսպետչերին, ձեռք բերում պահանջվող մասը, ապահովում աշխատանքի արագ վերսկսումը։*

*Բրիգադիրը, նրա օգնականը և տրակտորիստները հատուկ ուշադրություն են դարձնում վարի որակի վրա։ Բոլոր տրակտորիստներն էլ իրենց մոտ ունեն վարի խորությունը չափելու հարմարանք և աշխատանքի*



*ընթացքում հետևում են, որպեսզի վարը կատարվի անպայման պահանջված խորությամբ։*

*Միանգամայն հասկանալի է, որ տրակտորային և ոչ մի բրիգադա չի կարող սիստեմատիկաբար բարձր արտադրողականությամբ աշխատել, եթե նրան ամենօրյա օգնություն ցույց չտան ՄՏ կայանի մասնագետները։*

*Տեխնիկական օգնություն ցույց տալու համար նախ և առաջ հարկավոր է իմանալ, թե տվյալ ժամին ո՞ր տրակտորը կոլտնտեսության ո՞ր դաշտում է գտնվում և ինչ օգնության կարիք է զգում։ Դիսպետչերական հատակ աշխատանքի դեպքում միայն կարելի է դա իմանալ։ Եվ մխչյանցիներն օրինակ կարող են ծառայել։ Դիսպետչեր Ի. Հակոբջանյանն իր տրամադրության տակ ունի ՄՏ կայանի կողմից սպասարկվող կոլտնտեսությունների հողային տարածությունների քարտեզը, ըստ դաշտերի։ Այդ քարտեզի վրա դրված փոքրիկ կարմիր դրոշները ցույց են տալիս, թե որ տրակտորը տվյալ պահին որ դաշտում է գտնվում։ Ուշ երեկոյան նա կապվում է տրակտորային բրիգադների հետ և պարզում է, թե ով, ինչ օգնության կարիք է զգում։ Առավոտյան արդեն հերթա-*

պահ մեխանիկի միջոցով, որի տրամադրության տակ դրված է շրջիկ ավտոմեքենան, այդ օգնությունը ցույց է տրվում։

ՄՏ կայանում կազմակերպված է տրակտորների կարևորագույն մասերի փոխանակային ֆոնդ։ Որևէ մաս շարքից դուրս գալու դեպքում հանձնվում է ՄՏ կայանին և փոխարենը ստացվում է արդեն նորոգվածը, որով և կանխվում է պարապուրդը։ Մեքենատրակտորային կայանում հատուկ ուշադրություն է դարձվում դիսպետչերական ծառայության ճկունությունն ապահովելու վրա։

Այսպես են կազմակերպել իրենց աշխատանքը Մխչյանի ՄՏ կայանի առաջավոր մեխանիզատորները, որոնք սոցիալիստական լայն մրցություն են ծավալել 1954 թվականի պետական առաջադրանքները սահմանված ժամկետներին և ճշտորեն կատարելու, բարձր բերք նվաճելու համար։

---



# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՊԱՅՔԱՐԸ ԿԱՊԻՏԱԼԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

(Թվեր և փաստեր)

Կապիտալիստական երկրների կառավարությունների կողմից կիրառվող միլիտարացման քաղաքականությունը, ծանր բեռի նման ընկած է աշխատավորության ուսերին ։ Նա ուղեկցվում է հարկերի չտեսնված աճով, գների անընդհատ բարձրացմամբ։ Վերջին ժամանակներս, չնայած սպառազինության մրցավազքին, կապիտալիստական երկրներում կրճատվում է արտադրությունը, արագ աճում է գործազուրկների բանակը։ Այս ամենը ուժեղացնում է աշխատավորների պայքարը՝ հանուն իրենց կենսամակարդակի բարձրացման, հանուն դեմոկրատիայի և խաղաղության։

Ստորև բերվում են կապիտալիստական երկրներում աշխատավորների դրությունը և նրանց պայքարը բնորոշող մի քանի տվյալներ։

ԳՆԵՐՆ ԱՆԸՆԴՀԱՏ ԲԱՐՁՐԱՆՈՒՄ ԵՆ

✪ 1952 թվականին Ամերիկայի Միացյալ Նահանգներում մսրուստի գինը համարյա երեք անգամ ավե-

լի բարձր էր, քան պատերազմի նախօրյակին։ Միաժամանակ արագ աճում է աշխատավորության վրա դրվող հարկային բեռը։ Անհատական եկամուտներից գանձվող հարկերի ընդհանուր գումարը 1940—1941 բյուջետային տարվա 1,8 միլիարդ դոլարից 1953—54 բյուջետային տարում հասավ մոտավորապես 34,3 միլիարդ դոլարի։

Գների և հարկերի անընդհատ բարձրացման հետևանքով Ամերիկայում ընտանիքների համարյա $^2/_3$-ի եկամուտը ցածր է անգամ պաշտոնական «ապրուստի մինիմումից»։

✪ Անգլիայում սննդամթերքների գների մակարդակը, 1947 թվականի համեմատությամբ, աճել է 70 տոկոսով։ Արագ բարձրանում են նաև տնային գործածության առարկաների գները։ Այժմ կահույքը 200—300 տոկոսով թանկ է, քան մինչպատերազմը, իսկ որակն էլ ցածր է։ 1939 թվականի համեմատությամբ վուշի և բամբակի գործվածքեղենի գները բարձրացել են 575 տոկոսով, վերմակինը՝ 855 տոկոսով և այլն։

✪ Բելգիայում, ըստ մամուլի հաղորդագրության, փետրվարին մանրածախ գների ինդեքսը 11 տոկոսով բարձր էր, քան մեկ տարի առաջ։ Այսպես, կարտոֆիլի գինը բարձրացավ 15 տոկոսով։ Խիստ բարձրացան սուրճի, բուսական յուղի, մարգարինի, խոզի ճարպի, հալած ճարպի, մսի և մի շարք այլ սննդամթերքների գները։ Միայն ընթացիկ տարվա երկու ամսում սուր-



ճը, որը հանդիսանում է լայն սպառման ապրանք, թանկացավ 12 տոկոսով, մարգարինը՝ 5 տոկոսով, յուղը՝ 4 տոկոսով և այլն։

✪ Հոլանդիայում, անգամ պաշտոնական տվյալներով, ապրուստի գինը անցած տարվա համեմատությամբ բարձրացավ ավելի քան 4 տոկոսով, չհաշված հարկերի գանձման ասպարեզում կատարված փոփոխությունները։ Հատկապես բարձրացան կարտոֆիլի, բանջարեղենի և մրգերի գները, որոնք միայն երկու ամսվա ընթացքում թանկացան համարյա 20 տոկոսով։

✪ Նորվեգիայում անցած տարվա ընթացքում սննդամթերքների գները նույնպես խիստ բարձրացան. մսինը և մսամթերքինը՝ միջինը 20 տոկոսով, մակարոնեղենինը՝ 18 տոկոսով, հրուշակեղենինը՝ 6 տոկոսով, սուրճինը՝ 6,5 տոկոսով, մրգերինը՝ 19 տոկոսով և այլն։

✪ Ծայրահեղ արագ է աճում ապրուստի արժեքը գաղութային և կախյալ երկրներում։ Օրինակ, Բրազիլիայում անցած տարվա ընթացքում, ապրուստը թանկացավ 22 տոկոսով։

### ՄԵԾԱՆՈՒՄ Է ԳՈՐԾԱԶՈՒՐԿՆԵՐԻ ԲԱՆԱԿԸ

✪ ԱՄՆ-ում, նույնիսկ արտադրողների պրոֆմիության Կոնգրեսի ռեակցիոն ղեկավարների տվյալներով, կան 5 միլիոն լրիվ և 11 միլիոն մասնակի գործազուրկներ։ Աշխատանքի մինիստրության ցուցակա-

գրման բյուջեի տվյալներով երեք ամսվա ընթացքում, 1953 թվականի դեկտեմբերից մինչև 1954 թվականի փետրվարը, գործազուրկների թիվը ավելացել է ավելի քան 2 միլիոն մարդով։ Միայն փետրվարին գործազուրկների թիվն ավելացավ 584 հազարով։

✪ Անգլիայում, աշխատանքի մինիստրության տվյալներով, վերջին 12 ամսում միայն ցուցակագրված գործազուրկների թիվը հասել է ամենաբարձր մակարդակի։ Ընթացիկ տարվա փետրվարի վերջին, լրիվ գործազուրկների թիվը հասնում էր 430 հազարի։

✪ Կանադայում յուրաքանչյուր հարյուր բանվորից տասը բոլորովին գործ չունեն։

✪ Դանիայում աշխատանք չունի յուրաքանչյուր հինգերորդ բանվորը։

✪ Ապրուստի գների աճը և գործազրկության աճը բանվորներին հասցրել են ծայր աղքատության։ Հունաստանում աղքատներին տրվում է անգամ հատուկ «աղքատության վկայական»։ Այսպիսի «վկայական» ունեցողների թիվը հասնում է երկու ու կես միլիոնի, իսկ առանձին շրջաններում նրանք կազմում են ամբողջ բնակչության 65—85 տոկոսը։ Հունական «Էլեֆտերիա» թերթը գրում է, որ այժմ Հունաստանում մոտ երկու միլիոն մարդ օրական վաստակում է այնքան եկամուտ, որով կարելի է գնել միայն երկու բաժակ սև սուրճ, իսկ երկուս ու կես միլիոն մարդկանց եկամուտը հազիվ բավականացնի մեկ տուփ սի-



գարետ գնելու համար։ Հունական մամուլի խոստովանությամբ, աշխատավորության ծայրահեղ աղքատության պատճառը թաքնված է չտեսնված բարձր ռազմական ծախսերի մեջ, որոնք կլանում են Հունաստանի պետական բյուջեի կեսից ավելին։ «Մինչև այժմ դեռ երբեք,— գրում է հունական «Պրոինի» թերթը,— մեզ մոտ սովահարության ուրվականն այնքան սարսափելի չի եղել, ինչպես այժմ»։

✪ Բայց հատկապես ծանր պայմաններում են ապրում աշխատավորները գաղութային և կախյալ երկրներում։ Կուբա կղզում, որտեղ բնակչությունը կազմում է ընդամենը վեց միլիոն մարդ, կան մոտ մեկ միլիոն գործազուրկներ։ Բացի դրանից, շատերը աշխատում են տարվա մի որոշ ժամանակ, իսկ մնացած ժամանակ թափառում են՝ երկրում սնունդ փնտրելով։ Օրինակ, շաքարի պլանտացիաների 700 հազար բանվոր տարվա մեջ աշխատում են միայն 3—4 ամիս։

✪ Վերջերս ամերիկյան «Նեյշնլ» ժուռնալում անգլիական հայտնի գիտնական Պ.Մ.Ս. Բլեկետը խոստովանեց, որ գաղութային աշխարհի «աղքատ երկրները», որոնց ժողովուրդները «կիսաքաղց գոյության մակարդակի վրա են կանգնած», մշտապես ապրում են «աղքատության, թերսնման, հիվանդությունների և անգրագիտության» մեջ։

Աֆրիկայի, Միջին Արևելքի, Ասիայի 900 միլիոն գաղութային բնակչության յուրաքանչյուր շնչի հասնող միջին եկամուտը տարեկան 30 դոլարից էլ քիչ

է, այն դեպքում, երբ եվրոպացին տարեկան միջին հաշվով ստանում է հազար դոլար։

## ԱՃՈՒՄ Է ԳՈՐԾԱԴՈՒԼԱՅԻՆ ՊԱՅՔԱՐԸ

Բնական է, որ կապիտալիստական և գաղութային երկրների աշխատավորական լայն մասսաները չեն ցանկանում հաշտվել այդպիսի դրության հետ։ Միլիոնավոր աշխատավորներ ակտիվորեն սկսում են պայքարել իրենց տնտեսական և քաղաքական դրությունը բարելավելու համար։ Եթե մինչպատերազմյան հինգ տարիների ընթացքում կապիտալիստական տասնվեց երկրներում տեղի է ունեցել մոտ 50 հազար գործադուլ, որոնց մասնակցել է 15.429 հազար մարդ, ապա հետպատերազմյան առաջին հնգամյակում, այդ նույն երկրներում տեղի է ունեցել 57.963 գործադուլ, իսկ նրանց մասնակիցների թիվը նախապատերազմյան հնգամյակի համեմատությամբ եռապատկվել է, կազմելով 49.432 հազար մարդ։ Միայն 1952 թվականին կապիտալիստական հինգ մեծ երկրներում (Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Ֆրանսիայում, Իտալիայում, Արևմտյան Գերմանիայում և Ճապոնիայում) գործադուլ են արել ավելի քան 30 միլիոն բանվոր և ծառայող։

✪ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, ոչ լրիվ տվյալներով, միայն անցյալ տարվա ընթացքում եղել է 5.100-ից ավելի գործադուլ, որոնց մասնակցել է ավելի քան 3,5 միլիոն մարդ։



✪ Անգլիայում 1953 թվականին գործադուլ են արել երկու միլիոնից ավելի մարդ։

✪ Ֆրանսիայում 1952 թվականին գործադուլ են արել 5 միլիոն բանվորներ և ծառայողներ։ Իսկ անցյալ տարի միայն օգոստոսյան գործադուլին մասնակցել են երկրի 4 միլիոն բանվորներ և ծառայողներ։

✪ Բուռն կերպով աճում է գործադուլային շարժումը Իտալիայում։ Ոչ լրիվ տվյալներով, 1953 թվականին գործադուլներին մասնակցել են 20 միլիոն բանվորներ ու ծառայողներ։

✪ Ճապոնիայում հետպատերազմյան տարիներին գործադուլային պայքարը հասել է հսկայական չափերի։ Միայն անցյալ տարվա առաջին կեսին Ճապոնիայի աշխատավորների գործադուլներին, ցույցերին և մարտական այլ ելույթներին մասնակցել են 9 միլիոնից ավել բանվորներ և ծառայողներ։

✪ Ավելի ու ավելի լայն թափ է ստանում գործադուլային պայքարը Արևմտյան Գերմանիայում, Հոլանդիայում, Հունաստանում, Ավստրիայում, Բելգիայում, Կանադայում, Ավստրալիայում, Մերձավոր, Միջին և Հեռավոր Արևելքի գաղութային ու կախյալ երկրներում, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի զանազան երկրներում։

Կապիտալիստական և գաղութային երկրների աշխատավորության աճող պայքարը հացի, աշխատանքի, խաղաղության, դեմոկրատիայի և ազգային անկախության համար հանդիսանում է ժամանակակից միջազգային իրադրության կարևորագույն գործոններից մեկը։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՅՑԱՀԱՆԴԵՍԻՆ ՄԱՍՆԱԿՑԵԼՈՒ ԻՐԱՎՈՒՆՔԻ ՀԱՄԱՐ

*1. Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի բացումը նշանավոր իրադարձություն է մեր երկրում։*

*2. Ցուցահանդեսը փայլուն կերպով հաստատում է կոլտնտեսային կարգերի մեծագույն ուժն ու հզորությունը։*

*3. Սոցիալիստական գյուղատնտեսությունը աշխարհում ամենախոշոր, ամենամեքենայացված գյուղատնտեսությունն է։*

*4. Ցուցահանդեսը ցուցադրում է բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքի անխորտակելի ուժն ու ամրությունը։*

*5. Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունն անդադրում հոգ են տանում սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման համար։*



*6. Ի՞նչ է արվում մեր կոլտնտեսությունում ցուցահանդեսին մասնակցելու իրավունք նվաճելու համար։*

*7. Կոլտնտեսային արտադրության մեջ լայնորեն արմատավորենք գյուղատնտեսության առաջավորների փորձը։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի № 82-ում։*

*Սոցիալիստական գյուղատնտեսական արտադրության նվաճումների ցուցահանդեսը, ՏԱՍՍ-ի ինֆորմացիոն հոդվածը՝ տպագրված «Ս. Հ.»-ի № 85-ում։*

*Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի Գլխավոր Կոմիտեի որոշումից (ցուցահանդեսի մասնակիցներ ընտրելու ցուցանիշների և պայմանների մասին), տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի № 88-ում։*

Վ. Մացկևիչ— *Լայնորեն ծավալել մրցությունը Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունք նվաճելու համար, «Ագիտատորի բլոկնոտ» № 10։*

### ՊԱՅՔԱՐ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*1. Լիովին կիրառել ագրոտեխնիկական կոմպլեքսը հացահատիկային, բանջարանոցային կուլտուրաների*

թամբակի և այգիների մշակության ընթացքում։

2. Գյուղատնտեսական կուլտուրաների մշակությունը կատարել ճիշտ ժամկետներին և բարձր որակով։

3. Ցանքերի, պլանտացիաների ու այգիների մշակությունը բարելավելու համար կոլտնտեսային արտադրության մեջ լայնորեն արմատավորել առաջավոր փորձը։

4. Մշակության ընթացքում լրիվ և արդյունավետ օգտագործել գյուղատնտեսական մեքենաների կարողությունը։

5. Գյուղատնտեսական կուլտուրաների մշակությունը մեքենայացնելու ասպարեզում ձեռք բերված մեր նվաճումները։

6. Սիստեմատիկորեն պայքարենք գյուղատնտեսության վնասատուների դեմ։

7. Գյուղատնտեսական կուլտուրաների մշակությունը բարելավելու համար լայնորեն օգտագործենք քիմիական նոր միջոցները։

8. Ի՞նչ է անում մեր կոլտնտեսությունը և բրիգադան գյուղատնտեսական կուլտուրաների մշակությունը բարելավելու համար։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. Մալենկով— *Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, էջ 56—72, Հայպետհրատ, 1952։*



Ն. Ս. Խրուշչև— *ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1953 թ. սեպտեմբերի 3-ին, Հայպետհրատ, 1953։*

*ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված 1953 թվականի սեպտեմբերի 7-ին, ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1953։*

*Երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման և խոպան ու խամ հողերի յուրացման մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ ընդունված 1954 թ. մարտի 2-ին, ընկեր Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. մարտի 6-ի համարում։*

*Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի Գլխավոր Կոմիտեի որոշումից (ցուցահանդեսի մասնակիցներ ընտրելու ցուցանիշների և պայմանների մասին), տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. № 88-ում։*

*Վճռական թափ հաղորդել գարնանացանին, «Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը՝ տպագրված № 106-ում։*

## ՍԵՂՄ ԺԱՄԿԵՏՈՒՄ ԱՎԱՐՏԵՆՔ ԽՈՏՀՈՒՆՁԸ

1. Առատ կերը անասունների մթերատվության շեշտակի բարձրացման կարևորագույն միջոցն է։

2. Կերի պրոբլեմը լուծելու համար վճռական նշանակություն ունի կերահայթայթման մեքենայացումը։

3. Ինչպես է մասնակցում մեր ՄՏ կայանը խոտհնձին։

4. Ի՞նչ է արել մեր ՄՏ կայանը խոտհունձը, խոտի դիզումը, կերի սիլոսացումը մեքենայացնելու ուղղությամբ։

5. Ժամանակին հնձել և դիզել խոտը, հիշելով, որ այդ աշխատանքների ձգձգումը մեծ չափով իջեցնում է խոտի որակը։

6. Ինչպե՞ս է նախապատրաստվել մեր կոլտնտեսությունը խոտհունձը բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու համար։

7. Պատվով կատարենք խոտը ժամանակին և անկորուստ հավաքելու վերաբերյալ ստանձնած պարտավորությունները։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Ն. Ս. Խրուշչև — *ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1953 թ. սեպտեմբերի 3-ին, Հայպետհրատ, 1953։*

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը «Երկրում անասնաբուծության հետագա զարգացման միջոցառումների և կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների տնտեսությունների կողմից պետությանը անասնաբուծական մթերքների պարտադիր հանձնումների նորմաների իջեցման մասին», Հայպետհրատ, 1953, էջ 3—61։*


---



# ԲՈՆՆԻ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ

Ամերիկյան ռեակցիոն կառավարության թելադրանքով 1952 թվականի մայիսի 26-ին ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և արևմտագերմանական «ֆեդերալ կառավարության» միջև ստորագրվեց Բոննի սեպարատ, միլիտարիստական անհավասար պայմանագիրը։ Այդ պայմանագիրը շտապ փույթ ռատիֆիկացիայի ենթարկվեց (վավերացվեց) ԱՄՆ-ի և Անգլիայի կողմից։

Բոննի պայմանագրով ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարությունները կոպիտ կերպով խախտում են Պոտսդամի համաձայնագրով ստանձնած իրենց պարտավորությունները և միջազգային կանոնները։ Պոտսդամի պայմանագրի համաձայն ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի կառավարությունները պարտավորվել են պահպանել Գերմանիայի միասնությունը, դեմոկրատական հիմունքներով ստեղծել գերմանական կառավարություն, կնքել հաշտության պայմանագիր և Գերմանիայի տերիտորիայից դուրս բերել

օկուպացիոն զորքերը։ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի կառավարությունները անտեսելով Պոտսդամի համաձայնագրի այդ և նման մի շարք հարցեր, իրենց օկուպացիոն գոտիներում վերակենդանացնում են գերմանական ռազմական պոտենցիալը և իրենց հովանավորության ու հսկողության տակ վերցնում գերմանական մոնոպոլիստներին ու միլիտարիզմը։

ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան չեն ընդունում ՍՍՌՄ առաջարկությունները միասնական գերմանական դեմոկրատական կառավարություն ստեղծելու մասին, այլ վարում են Գերմանիայի մասնատման քաղաքականություն։

Բոննի պայմանագրով, Ամերիկյան իմպերիալիստները նպատակ են դրել ստեղծել գերմանական ռևանշիստական բանակ՝ հիտլերյան նախկին գեներալների հրամանատարությամբ, մյուս կողմից՝ ճնշել գերմանական ժողովրդի շարժումը, որը ձգտում է միավորվել և պայքարում է ռազմական մրցավազքի դեմ։

Բոննի պայմանագիրը Արևմտյան Գերմանիային պարտավորեցնում է մասնակցել այսպես կոչված Եվրոպական բանակի ստեղծմանը, որը նշանակում է վերականգնել



գերմանական միլիտարիզմը, ռևանշիստական բանակը, միաժամանակ դա նշանակում է Արևմտյան Գերմանիայի ժողովրդի վրա, բացի օկուպացիոն ծախսերից, դնել նոր լրացուցիչ ծախսեր՝ բանակի պահպանման համար։ Բոննի պայմանագիրը Գերմանիային պարտավորեցնում է մտնել «Ատլանտյան միավորման», այն է՝ Հյուսիս-Ատլանտյան պակտի սիստեմի մեջ և գերմանական բանակը իր հրամանատարությամբ ենթարկել «Ատլանտյան միավորման» օրգաններին։ Արևմտյան երեք տերություններին իրավունք է տրվում Ատլանտյան բլոկի ուզած պետության զորքերը ցանկացած ժամանակ մտցնել Գերմանիայի տերիտորիան։ ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի կողմից Գերմանիայում ստեղծված է «օկուպացիոն խորհուրդ», որի բոլոր կարգադրությունները անորոշ ժամանակով պարտադիր են Արևմտյան Գերմանական կառավարության համար։ «Բոննի կառավարությունը»՝ Ադենաուերը ընդունել է միջազգային հարցերին վերաբերող այն բոլոր պայմանագրերը, որոնք կնքել են արևմտյան երեք տերությունները Գերմանիայի անունից։

Բոննի պայմանագիրը օկուպացիոն իշխանություններին հատուկ իրավունքներ է տվել





միջամտելու Գերմանիայի ներքին գործերին, «արտակարգ դրություն» մտցնելու, որի ընթացքում բոլոր իրավունքները անցնում են օկուպացիոն իշխանությունների ձեռքը: Փաստորեն այդ բոլորի նպատակն է Արևմտյան Գերմանիան 50 տարի պահել կիսաօկուպացված վիճակում, վերականգնել նրա զինված ուժերը և այն դարձնել հարվածային բրիգադ՝ իրենց Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ նպատակների համար, վտանգ սպառնալով Եվրոպայի խաղաղության գործին: Հակառակ այդ բոլորին, ՍՍՌՄ-ը, հավատարիմ մնալով Պոտսդամի պայմանագրի ոգուն, ամենայն ճշտությամբ կատարում է իր պարտավորությունները և վճռականորեն պահանջում արդարացի և արագ կերպով լուծել Գերմանիայի հարցը, ստեղծել ազատ, միասնական, դեմոկրատական Գերմանիա:

## ՓԱՐԻԶԻ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ

1952 թվականի մայիսի 27-ին, Փարիզում, ԱՄՆ-ի, Ֆրանսիայի, Իտալիայի, Բելգիայի, Նիդերլանդների և Լյուքսեմբուրգի միջև կնքվեց այսպես կոչված «եվրոպական պաշտպանական միավորում» ստեղծելու մասին պայմանագիրը: Միլիտարիստական այդ պայմանագրի նպատակն է՝ ստեղծել եվրո-



պական մի շարք կապիտալիստական պետությունների ռազմական դաշինք, այն է՝ «եվրոպական բանակ» ագրեսիվ նպատակների համար: Փարիզի պայմանագիրը ծառայում է ռազմական մրցավազքն ուժեղացնելու, Արևմտյան Գերմանիայի ռևանշիստական բանակը վերածնելու գործին: Փարիզի պայմանագրի մեջ մտնող երկրներին թելադրել են ամերիկյան իմպերիալիստները, որոնք ունեն իրենց հատուկ պլանները՝ օգտագործել ուրիշ երկրների տերիտորիաները և ուրիշ պետությունների զինված ուժերը ազատասեր ժողովուրդներին ստրկացնելու, ամերիկյան մոնոպոլիստների համաշխարհային տիրապետություն հաստատելու համար: Փարիզյան պայմանագրով ստեղծված «եվրոպական բանակը» պետք է ենթարկվի Հյուսիս-Ատլանտյան «դաշինքի» օրգաններին, որոնց ղեկավարելու են ամերիկյան գեներալները: Փարիզյան պայմանագրով արևմտա-գերմանական Բոննի «պետությունը» մտցվում է Հյուսիս-ատլանտյան բլոկի սիստեմի մեջ և նրան թույլատրվում է ռազմականացնել երկրի էկոնոմիկան, ստեղծել ագրեսիվ զինված ուժեր և այլն: Փարիզի պայմանագիրը միաժամանակ նախատեսում է հիտլերյան գեներալներին օգտագործել «Ատ-

լանդայան» հրամանատարության շտաբներում: Այդ պայմանագիրը ունի ագրեսիվ՝ հակազգային, հակաժողովրդական բնույթ, որը ուղղված է ՍՍՌՄ-ի, ժողովրդական դեմոկրատիայի երկրների և պայմանագրին մասնակցող երկրների ժողովուրդների դեմ:

---

Խմբագիր՝ Գր. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 11 1954 г.

ՎՖ 10493 Պատվեր 470 Տիրաժ 8300

Գլխպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան
Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.:

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 12 ՀՈՒՆԻՍ 1954